## ՀՀ ԳԱԱ ակադեմիկոս
## Աշոտ Մելքոնյանի ծննդյան 60-ամյակ




2021 թ. փետրվարի 16-ին լրացավ մեր ժամանակների անվանի ու բազմավաստակ պատմաբան, գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՀՀ ԳԱԱ ակադեմիկոս Աշոտ Մելքոնյանի ծննդյան 60-ամյակը:

Աշոտ Աղասու Մելքոնյանը ծնվել է 1961 թ. փետրվարի 16-ին Ախալքալաքում, ՎԽՍՀ վաստակավոր ժուռնալիստ Աղասի Հարությունի Մելքոնյանի ընտանիքում: 1977 թ. նա ոսկե մեդալով ավարտել է Ախալքալաքի Դերենիկ Դեմիրճյանի անվան 4-րդ հայկական միջնակարգ դպրոցը: Նույն թվականին ընդունվել և 1982 թ. գերազանցությամբ ավարտել է Երևանի պետական համալսարանի պատմության ֆակուլտետը: 1982-1985 թթ. եղել է նույն համալսարանի Հայոց պատմության ամբիոնի ասպիրանտ:

1989 թ. Ա. Մելքոնյանը պաշտպանել է թեկնածուական ատենախոսություն՝ «Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգի հայ ազգաբնակչությունը 19-րդ դարի առաջին երեսնամյակին» թեմայով, իսկ 2002 թ. պաշտպանել է դոկտորական ատենախոսություն՝ «Ջավախքը 19-րդ դարում և 20-րդ դարի առաջին քառորդին» թեմայով, ստանալով պատմական գիտությունների դոկտորի գիտական աստիճան:

1986 թ. հոկտեմբերին Աշոտ Մելքոնյանն աշխատանքի է անցել ՀՀ Գիտությունների ազգային ակադեմիայի պատմության ինստիտուտում, նախ՝ որպես լաբորանտ, ապա գիտաշխատող, գիտնական քարտուղար և գիտական հարցերի գծով փոխտնօրեն: 2002 թ. հուլիսից Ա. Մելքոնյանը այդ ինստիտուտի տնօրենն է:

2004 թ. ստացել է պրոֆեսորի կոչում: 2006 թ. ընտրվել է ԳԱԱ թղթակից անդամ, 2014 թ.՝ ԳԱԱ ակադեմիկոս:

2009 թ. օգոստոսին հայրենակիցների կամոք նա դարձել է Ախալքալաքի պատվավոր քաղաքացի:

Աշոտ Մելքոնյանի գիտական աշխատանքները, ուսումնասիրությունները վերաբերում են Հայաստանի պատմական ժողովրդագրությանը, Ջավախքի պատմությանը, հայ-վրացական և հայ-թուրքական հարաբերություններին, Հայկական հարցին և հայոց ցեղասպանության հիմնահարցերին: Նրա գիտական աշխատանքներն լույս են տեսել Հայաստանում, ՌԴ-ում, Անգլիայում, Հունգարիայում, Ֆրանսիայում, Եգիպտոսում, ԱՄՆ-ում, Լիբանանում, Իրանում, Արգենտինայում, Վրաստանում՝ հայերեն, անգլերեն, հունգարերեն, ֆրանսերեն, վրացերեն, իսպաներեն, պարսկերեն թուրքերեն, արաբերեն լեզուներով:

Ծնունդով լինելով ջավախքցի Ա. Մելքոնյանը միշտ ուշադրության կենտրոնում է պահել Ջավախքի պատմության ուսումնասիրությունը: Նրա հեղինակությամբ լույս է տեսել «Ջավախք. պատմության ուրվագծեր»-ը (1999)՝ գիտական շրջանառության դնելով արխիվային հարուստ նյութ: Աշխատությունը խիստ օգտակար է ինչպես Ջավախքի, այնպես էլ հարևան Ախալցխայի, Ասպինձայի, Ծալկայի և առհասարակ հայ-վրացական հարաբերությունների ու ամբողջ տարածաշրջանի պատմության

ուսումնասիրության համար: Իսկ «Նյութեր Ախալցխայի ու Ախալքալաքի դպրոցների պատմությունից (19-րդ դար-20-րդ դարի սկիզբ)» (Ե., 2005 թ.) աշխատությունում, եկեղեցու թեմական կառույցների ընդհանուր հենքի վրա նկարագրված է հիշյալ երկու գավառների հոգևոր-կրթական կյանքը, 1829 թ. Երկրամասը Ռուսաստանին միանալու հետո Սամցխե-Ջավախքում հայ քաղաքական ու հոգևոր-կրթական կյանքի աշխուժացման միտումները, երբ տարածաշրջանում բացվել է ծխական, մասնավոր ու պետական հարյուրավոր դպրոցներ:

Ա. Մելքոնյանը գիտական աշխատանքին զուգընթաց վարել է նաև մանկավարժական ակտիվ ու եռանդուն գործունեություն. «Հայոց պատմություն» առարկան դասավանդում է ԵՊՀ-ում, ԳԱԱ մագիստրատուրայում, ժամանակին դասավանդել է նաև Հայաստանի մի շարք այլ բուհերում: 2004 թ. հունիսից մինչև 2006 թ. դեկտեմբերը համատեղության կարգով զբաղեցրել է Երևանի Մ. Հերացու անվան պետական բժշկական համալսարանի հասարակական գիտությունների ամբիոնի վարիչի պաշտոնը: Բազմիցս եղել է տարբեր բուհերի, այդ թվում՝ Երևանի Խ. Աբովյանի անվան պետական մանկավարժական, Արցախի պետական համալսարանների, Գյումրիի պետական մանկավարժական ինստիտուտի պատմության ֆակուլտետների պետական քննական հանձնաժողովների նախագահ: Ներկայումս պրոֆեսոր Ա. Մելքոնյանը գլխավորում է ՀՀ ԳԱԱ պատմության ինստիտուտի գիտական և նույն ինստիտուտում գործող «004 Հայոց պատմություն» մասնագիտական խորհուրդները, միաժամանակ ԵՊՀ խորհրդի, ՀՀ ԳԱԱ արևելագիտության ինստիտուտի, Երևանի պատմության թանգարանի գիտական խորհուրդների և մի շարք գիտական հանդեսների («Լրաբեր հասարակական գիտությունների», «Բանբեր Հայաստանի արխիվների», «ՎԷՄ», «Կանթեղ», «Տարեգիրք» և այլն) խմբագրական խորհուրդների անդամ է:

Նրա «Էրզրում (Էրզրում նահանգի հայ ազգաբնակչությունը 19-րդ դարի առաջին երեսնամյակին)» (Ե., 1994 թ.) պատմաժողովրդագրական ուսումնասիրությունը և Արևմտյան Հայաստանի գավառներին ու բնակավայրերին նվիրված 30 հոդվածները արժանացել են «Հայաստան» համահայկական հիմնադրամի գլխավոր մրցանակին, իսկ «Ջավախքը 19-րդ դարում և 20-րդ դարի առաջին քառորդին» (Ե., 2003 թ.) աշխատությունը՝ վաստակաշատ արևելագետ և ազգային-հասարակական գործիչ Գուրգեն Մելիքյանի հիմնադրած «Քաշաթաղի բազմազավակ ընտանիքներ» հիմնադրամի դրամաշնորհին, նաև «Թեքեյան» մշակութային միության «Հայկաշեն Ուզունյան» մրցանակին:

Ա. Մելքոնյանը պարգևատրվել է նաև Երևանի բժշկական համալսարանի «Ոսկե» (2005 թ.), «Ֆրիտյոֆ Նանսեն» (2010 թ.), ԵՊՀ-ի ոսկե (2011 թ.), «Մանկավարժական Համալսարան» ոսկե (2011 թ.), ՀՀ ՊՆ «Գարեգին Նժդեհ» (2011 թ.) մեդալներով: Պատմագիտության բնագավառում ձեռք բերած ակնառու հաջողությունների համար Ա. Մելքոնյանը 2003 թ. պարգևատրվել է «Մովսես Խորենացի», իսկ 2005 թ.՝ Հայոց ցեղասպանության 90-ամյա տարելիցի միջոցառումներին ակտիվորեն մասնակցելու համար ՀՀ վարչապետի հուշամեդալով, «ԼՂՀ ազգային-ազատագրական պայքարի 25-ամյակի առթիվ» հուշամեդալով (2013 թ.), «Անդրանիկ Օզանյան» մեդալով (2013 թ.), «Արգիշտի Առաջին» հուշամեդալով (2014 թ.):

**Սերգեյ Խուդավերդյան**
**«Ջավախք» հանրագիտարանի գլխավոր խմբագիր**